կառավարութիւնը փոխադրուելով ազատ մնացած Սպանիա, Մատրիտը նշանակեց պաշտօնական կեդրոն: Հակառակ բոլոր դժուարութեանց, կառավարութիւնը որոշած է մինչեւ վերջին վայրկեանը պաշտպանել ազգային ազատութեան սկզբունքները»:

Ցետոյ միութեան եւ համերաշխութեան կոչ մը ուղղեց ժողովուրդին:

*** Ազգայնական հրամանատարութիւնը կը ծանուցանէ թէ Քաթալոնիոյ պատերազմը վերջացած է, բանակը գրաւած ըլլալով Ֆրանսական սահմանագլուխը, Փուիկչէրտայէն մինչեւ Փոռ-Պու: Այս առթիւ ազգայնական մամուլը կը փառաբանէ սպանիացի եւ ֆրանսացի սպաներու սիրալիր հանդիպումը:

*** Ըմբոստութիւններ ծագեցան երկու ֆրանսական բանակատեղիներու մէջ, ուր սպանիացի զինուորներ տեղաւորուած են: Այս վերջինները կ'ուզէին բողոքի միթինկ մը սարքել, ուրիշներ ալ կայանէն դուրս ելլելով կը պտտէին: Ֆրանսական զօրքը միջամտելով պաշարեց ըմբոստները եւ վերահաստատեց բարեկարգութիւնը:

ՀԱՅՐԵՆԻՔ ամսագրի 15ամեակին առթիւ մասնաւոր կարգադրութիւն մը եղած էր անցեալ տարուան համար, «Յառաջ»ի հետ (զեղչեալ բաժնեգին): Այդ պայմանաժամը լրացած ըլլալով, կը յանձնարարենք բաժանորդներուն դիմել ուղղակի «Հայրենիք»ի վարչութեան:

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի Մասնաժողովը իր վերջին նիստին մէջ որոշեց վերաբանալ 8 Ռիւ Պոսիւէի Բարեգործականի Տան չաբաթական հայերէնի դասընթացքը, այն յոյսով թէ շուտով պիտի ապահովուի այդ դասընթացքին պահպանումին համար անհրաժեշտ նկատուած նուազագոյն 20 աշակերտներու ներկայութիւնը:

Դասաւանդութիւնները յանձնուած են փորձառու եւ ձեռնհաս ուսուցչուհիի մը խնամքին, եւ տեղի կ'ունենան ամէն Հինգշաբթի օր, առտուան ժամը 8.30էն մինչեւ 11.30: Սաներէն կը գանձուի անձ գլուխ 5 ֆրանքի ամսավճար, իբրեւ ծախսաբաժին:

Փարիզաբնակ հայ ծնողներէն կը խնդրուի այս դասընթացքին ղրկել անպայման ֆրանսական նախակրթարաններ յաճախող իրենց երկսեռ զաւակները:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Ց. Փափազեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Մկրտիչ Փափազեան (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Գրիգոր Փափազեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Ա. Պիպէռեան եւ զաւակունք, Ասլանեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն ազգականներու, բարեկամներու, Զէնկիլէրի Հայր. Միութեան, Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին եւ ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի մօր, քրոջ, զոքանչին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԲԵԲՐՈՆ ՓԱՓԱԶԵԱՆԻ

(ծնեալ Ասլանեան) դառնաղէտ մահուան առթիւ:

# ԹԷՅԱՍԵՂԱՆ
# ՎԱՐԴԱՆԱՆՑԻ ԱՌԹԻՒ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ

ՀԱՅՐ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

12 ՓԵՏՐՈՒԱՐ, ԿԻՐԱԿԻ ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3-7

**173 Ave. Aristide Briand, Cachan (Seine)**

ԿԸ ԽՕՍԻՆ Պ. ԼԵՒՈՆ ԶՕՐՄԻՍԵԱՆ

ԵՒ ՈՒՐԻՇՆԵՐ

Կը հրաւիրուին անխտիր Տարօնի բոլոր հայրենակիցները եւ հայկական ուանդութիւնները սիրող հայրենակիցները:

Մասնակցութեան համար 5 ֆրանք:

ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ — Denfertէն առնել Sceauxի գիծը եւ իջնել arrêt Bagneux:

ՓԱՐԻԶԻ ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Միութեան պարահանդէսը տեղի պիտի ունենայ 5 Մարտ, Կիրակի օր: Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

Միութեան հասցէն՝ Զ. Մինասեան, 14 Rue de Paradis, Paris (10):

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի Սանուց Միութիւնը, հովանաւորութեամբ Մասնաճիւղի վարչութեան, տեղւս Թաղապետարանի սրահին մէջ՝ 148 Rue P. Vaillant Couturier, 12 Փետրուար, Կիրակի, ժամը 3ին կը ներկայացնէ՝

Յ. Թումանեանի Ա Ն Ո Ւ Շ օփէրէթը

Բեմավար՝ Ս. Միութեան, վարիչ՝ Պ. Սահակ Յովհաննէսեան: Երաժշտական բաժինը կը վարէ՝ Պ. Քէչէճեան:

Մուտք՝ 7, 5, 3, փոքրերու՝ 2 ֆրանք:

## Դերասան Յ. Ղազարեանի ներկայացումները

Սէն Շամոնի մէջ.— 12 Փետրուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սէն Շամոն, Մալաթ. Կրթ. Միութեան սրահին մէջ:

ԱՇՈՒՂ - ՂԱՐԻԲ

Փոն տը Շէրիւիի մէջ.— 19 Փետրուար կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Յոյներու սրահին մէջ:

ԱԿԱՄԱՅ – ԲԺԻՇԿ ԵՒ ԱԴԱՄ ԵՒ ԵՒԱ

Սէնթ էթէնի մէջ.— 25 Փետրուար շաբաթ երեկոյ ժամը 8.30-ին Ռէփիւպլիքի սրահին մէջ:

Սէն Շամոնի մէջ.— 26 Փետրուար կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Մալաթ. Կրթ. Միութեան սրահին մէջ:

ՄԱՐՈՒՈՂ ՃՐԱԳՆԵՐ



## ԾԱԽՈՒ Է

Ծախու է խանութ մը (նպարեղէնի, պտուղի եւ բանջարեղէնի) ՔԱՆԻ մէջ, բանուկ պողոտայի վրայ: Վարձք՝ տարեկան 2700, միջին վաճառում օրական 1200 ֆրանք:

Գրել՝ VAHANIAN, 8, Place Vauban, Cannes (A. M.):



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— ՍԱՀԱԿ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ Իզմիրի Ագուէր քաղաքէն, կը փնտռէ իր եղբայրը՝ Խաչատուր Խաչատուրեան, հօր անուն՝ Աբրահամ, մօր անուն՝ Անուխ, քրոջ անուն՝ Փերուզիկ: 1922ին քէմալական շարժումին իրար կորսնցուցած են: Կը խնդրուի հասցէն գիտցողներէն իմացնել իր եղբօրը՝ Sahak Hatchadourian, 9 Docteur Colmette, St. Martin de Hérès, Grenoble (Isère) France:

## ԲՈՒՇԱՍՏԵՐ

ՀԱՅ ԳԻՐՔԻ ՏՕՆԸ այսօր, կիրակի, Բարեգործականի տան մէջ, 8, Rue Bossuet, ժամը 3էն կէս գիշեր: Կազմակերպուած՝ Հայ Գրողներու Ընկերակցութեան կողմէ, նախագահութեամբ՝ Պ. Ա. Չօպանեանի: Գրականգեղարուեստական ճոխ բաժինով:

Մուտք 5 ֆրանք:



## Հրապարակային բանախօսութիւն

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԿՈՒՍԷՆՎԻԼԻ «ՌԱԶՄԻԿ» ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

12 Փետրուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին

Մէզօն Գուղաքի սրահին մէջ, 65 Պուլվառ Ֆօնընէ

Կը խօսի ընկեր ԻՇԽԱՆԵԱՆ: Նիւթ՝ Խորհրդ. իշխանութիւնը եւ Հայաստան



## Թ Է Յ Ա Ս Ե Ղ Ա Ն

Ֆ. Հ. Կ. ԽԱՉԻ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ, ՇԱՎԻԼԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

12 Փետր., կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, դպրոցի սրահին մէջ

Երգ, արտասանութիւն, հաճելի ժամանց:

Մուտք՝ մեծերու 3 ֆրանք, փոքրերու 1 ֆրանք:



## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՅԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԿՈՂՄԷ

19 Փետրուար, Կիրակի ժամը ճիշդ 15ին «Պէշիքթաշլեան» թատերասրահին մէջ, 26 Rue Troyon, Sèvres. Métro: Pont de Sèvres:

Կը ներկայացուի «ԱՆԻԾԵԱԼԸ» (վերածում Շիլլէրի «Աւազակներուն») եւ երգիծական զաւեշտներ՝ Flageolet եւ La scuola del Solfeggio:

Տոմսերու գինն է՝ 10 եւ 7 ֆրանք



## ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԴԵՐԱՍԱՆ ՍՈՒՐԷՆԵԱՆԻ ԿՈՂՄԷ

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ ԳՄԲԷԹԵԱՆԻ ԵՒ ԾԱՆՕԹ ՈՒԺԵՐՈՒ

12 Փետրուար, կիրակի ցերեկ ժամը ճիշդ 3ին

**Théâtre Renée Maubel**ի մէջ

Թիւ 4 à 10 Rue de L'Orient. Paris (18) Metro Blanche կամ Abbesses

ԿԸ ԲԵՄԱԴՐՈՒԻ Պ. ՊՌՕՇԵԱՆԻ ՍՕՍ ԵՒ ՎԱՐԴԻԹԵՐ

(երաժշտական տրամ 4 արար)

Ժամադրուեցէք այսօրուան ներկայացումին:




**Le Gerant : H. STEPHAN**

**Imprimerie A-DER (AGOPIAN)** 17, Rue Damesme — PARIS (13)

# ԹՈՐԳՈՄ ԱՐՔԵՊ. ԳՈՒՇԱԿԵԱՆ

(ՅՈՒՇԵՐ ԵՒ ՆԻՇԵՐ)

— oo —

Մանկութեանս կուռքերէն մէկն էր Թորգոմ։

Երբ օրը կ'իրիկնանար, այրենա-րանը գնելով տոպրակի մը մէջ— ո-մանք՝ իրենց գրպանին մէջ— կը դի-տէինք թէ ի՛նչպէս մատ կը խաղցնէր քիթին Նարեկեան վարժարանին պա-տուհաններուն վրայ, ու կը սպասէ-ինք որ արեւին շուքը հասնէր Բոնրա-նին մինարէին,— այդ էր մեր ժամա-ցոյցը։ Ու տա՛նկ,— «լուսարարը կը կախուէր»։

Կարգ կազմած՝ եկեղեցի կը տա-նէին մեզ։ Այդ օրերու Թորգոմէն կը յիշեմ դեռ իր ձայնը,— թաւ, պղնձի քաղցրութեամբ, անձրեւի պէս սրսփուն։ «Խաղաղութիւն քո տո՛ւր մեզ, Տէ՛ր»,— երբ կը դառնար այս աղերսութիւնը Թորգոմի բերնին մէջ, ու շատ դպրոցականներ կ'աշխատէին նմանցնել՝ իրենց կոկորդին խորը խեղդելով պատանեկան արծաթէ ձայները։ Ես ուրիշ մարզանք մը կը կատարէի...

...նաւորութեամբ եւ իբրեւ թեկնածու Սանասարեան վարժարանի։

Թորգոմ շուտ հեռացաւ, սակայն, Արմաշէն։ Գիւղը պարպուեցաւ կար-ծես իր մեկնումով։ Թշնամութիւն մը պէտք հանդէպ յաջորդին (Բար-գէն)։ Մանուկի հոգիով կը հաւատա-յի թէ պիտի վերադառնայ։

Այնուհետեւ ես ալ մեկնեցայ Ար-մաշէն։ Յետոյ իրարու յաջորդեցին պատերազմները։ «Մանկութեան օ-րեր անցան գնացին երազի նման»։

Մեծ պատերազմէն վերջ, երբ իմա-ցայ թէ Թորգոմ առաջնորդ կը մնայ Եգիպտոսի, նամակ մը գրեցի։ Պա-տասխան չստացայ։ Յետոյ Փարիզ անցայ։ Անգամ մը եւս գրեցի։ Դարձ-եալ պատասխան չստացայ։

Հ. Մ. Ը. Մ.ը ողիմպիական կազ-մակերպած էր Փարիզի մէջ։ Այդ օ-րը Թորգոմը տեսայ պատուոյ բեմին վրայ,— Փարիզ եկած էր դարման-ուելո՞ւ թէ Լոնտոն մեկնելու համար...

Տարինե՛ր անցեր են, Արմաշը կոր-սուեր էր եւ հիմա որ Արմաշը կը գտնեմ, դուն ինծի կը զլանաս այդ ուրախութիւնը։

Զարմա՛նք, այն որ նամակ մը ան-գամ չէր գրեր, հիմա այսքան փոխ-ուի՛։

Ինքնաշարժ նստանք եւ գացինք պանդոկը։ Փարիզի ամէնէն փառաւոր պանդոկներէն մին։ Սպասեակները շուրջը կը դառնան յարգանքով ու գրեթէ կախարդուած։

— Մոնսէնեո՛ր, մոնսէնեո՛ր...

Եւ Թորգոմ գիտէր արժեցնել ինք-զինք, կարտինալէ մը աւելի պատկա-ռանք ներշնչելով անոնց։

Ծոխ ճաշ մը։ Ինք հազիւ քանի մը պատառ կերաւ.

— Կե՛ր, կե՛ր, դուն ինծի մի՛ նա-յիր, ես շաքարախտ ունիմ, ըսաւ։

Շաքարախտի պատմութիւնը պահ մը գրաւեց մեր խօսակցութիւնը։ Յե-տոյ սկսաւ ոգեկոչել Արմաշը։

— Պզտիկ ու սեւուկիկ տղայ մըն էիր, կը յիշե՞ս մեր Գեղամը, որ քե-զի եւ ձեր Գեղամին հետ վար չէր իջ-ներ այգիներէն։

Գեղամ կը կոչուէր իր եղբօրորդին, ու Գեղամ կը կոչուէր նաեւ իմ հօր-...

[...]

...եկեղեցիին մէջ արտասանեցի Պօղոսի երկար «Թուղթ»ը Կորնթացիներուն ուղղեալ.— «Ցուցանեմ ձեզ, եղբա՛րք, զԱւետարանն իմ»։ Պէտք է որ շատ պզտիկ եղած ըլլամ, քանի որ, կը յի-շեմ, Աղջիկ-Մինասը ձեռքէս բռնած՝ գիս սեղան հանեց, ձեռքս Աւետարան մը դրաւ, յետոյ թոռմած ժպիտով մը քաջալերեց զիս ու հեռացաւ՝ պահ մը շուարած թողլով ջահերու փարփառ լոյսին մէջ եւ վարդապետներու ե-ղեւնաձեւ, սրադլուխ սաւերներուն դէմ։ Յաղթանակի պէս բան մը եղաւ այդ արտասանութիւնս,— յաջորդ օ-րը Թորգոմ գրպաններս կ'ողողէր նա-րինջով ու շամիչով, մագաղաթանը-ման նշխարով եւ թաւշապատ օրա-ցոյցով մը, որուն վրայ տարուոյն ու-կեզօծ թուականը (1907) զարմանք կը պատճառէր, դեռ ինծի ան-հասկնալի։ Թորգոմ այլեւս իմ պաշտ-պանս էր եւ ես հպարտ էի իր հովա-...

...էր բազմութեամբ։

— Համբուրէ՛ ձեռքս, ըսաւ յան-կարծ։

Իբր թէ չլսեցի եւ խօսակցութիւնը շարունակել փորձեցի այնպիսի շեշ-տով մը որ կը նշանակէր թէ շատ բան մոռցած եմ հին աւանդութիւններէն եւ հաւատքէն։

— Համբուրէ՛ ձեռքս, կրկնեց ձեռ-քը միշտ երկարած։ Հիմակ բժիշկ ես, բայց ես նոյն վարդապետն եմ, որուն ձեռքը կը համբուրէիր հաւատքով եւ ակնածանքով, տակաւին մանուկ։

Յետոյ ըսաւ որ գործս շուտ վեր-ջացնեմ, որպէսզի միասին ճաշենք։ Պատասխանեցի թէ ստիպուած եմ եր-թալ «Յառաջ»ի խմբագրատունը, թէ աշխատանք ունիմ։

— Ո՛չ, ըսաւ կտրուկ, ես ալ աշ-խատանք ունիմ, բայց կ'ուզեմ կէսօ-րէ վերջը միասին անցընել քեզի հետ։

[...]

ՀԱՅ ԱՂԲԻՒՐ

# ՎԱՆԵՑԻՆ

ԽՄԲ.— Առաջինն է այս երգիծա-կան նոր շարքի մը, ուր հետզհետէ պիտի երեւան «Ատափազարցին», «Կեսարացին», Պոլսեցին եւն.։

Աստուած երկու հրեայ, մէկ ամ-բողջ Հայ եւ կէսՔիւրտ իրար խառնե-լով ստեղծած է Վանեցին։

Ստեղծած է՝ գլուխը տափակ ու միտքը սուր։

Տէրը երգիչ ստեղծած է Վանեցին, սակայն, փոխանակ անոր կոկորդին մէջ սոխակ մը դնելու՝ սխալմամբ ագռաւ մը խոթած է։ Վանեցին իր կոկորդի ագռաւը իբր սոխակ յաջո-ղած է ծախել, քանի մը անգամ։ Այդ պատճառով ալ Աստուած իր սխալը չէ դարմանած։

Երկնաւոր Հայրը Վանեցիին առա-տաձեռնութեան տուած է եզական բան մը. Վանեցին խօսած ատեն, կարծես ունի բերնին մէջ տաքեխ ձուկ մը, իսկ իր կոկորդին մէջ ճանկռտող կա-տու մը։

[...]

...տարանան, Վանեցին է որ Հայ պիտի մնայ յաւիտեան ու կենդանի պիտի պահէ հայութիւնը։

Այս պարագան Վանեցին ինքն ալ գիտէ լաւ։ Այս պատճառով քիթը մեծ է։ Աստուած միայն գիտէ թէ այդ քիթը ո՛ւր կը սկսի եւ ո՛ւր կը վերջանայ։

Վանեցիին քիթին վրայ արեւը մա-րը չի մտներ։

ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ

ՕՐՈՒԱՆ ԳԻՐՔԵՐԸ

# «ԿԱՐՃ ՕՐԵՐ ԷՍ»

(ԽԱՉԻԿ ԴԱՇՏԵՆՑԻ)

Ինչպէս դիտել կուտայի նախընթաց քրոնիկով մը, հաւաքական նախա-ձեռնութիւններով միայն կարելի է այլեւս մեղմել հայ գրքի տագնապը։ Հայ հեղինակներուն անձուկ միջոց-ները ի վիճակի չեն այլեւս դիմա-գրաւելու հրատարակչական պահանջ-ներուն։ Հայ գիրքը չի կրնար փրկել ոչ ինքզինքը, ոչ իր հեղինակը...

[...]

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (26)

# ԳԷՈՐԳ ՄԱՐԶՊԵՏՈՒՆԻ

(ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ)

— oo —

Գրեց՝ ՄՈՒՐԱՑԱՆ

«Կաթուղիկոսը այդ նպատակով շատ աշխատեց, բայց իշխանները ան-սաստեցին նրա խրատներին եւ մեր-ժեցին Վեհի խնդիրները։ Վերջինս մինչեւ անգամ իջաւ Տարօն եւ աշխա-...

...օգնութեան համար։ Կաթուղիկոսը չուզեց գնալ, որովհետեւ վախեցաւ թէ Հայոց եկեղեցին Յունաց եկեղե-ցու հետ միացնելու առաջարկութիւն կ'անէին իրան։ Ուստի հրաւէրը չըն-...

[...]

# 14 ՄԱՅԻՍ, ԿԻՐԱԿԻ ԿԷՍՕՐԷ ՎԵՐՋ Mutualitéի ՄԵԾ ՍՐԱՀԸ ?

ղութիւն կ'ուզէ, բայց կը վախնայ պատերազմէն, քանի որ պետական ղեկավարները այդ մասին կը խօսին միշտ: Միլիոնաւոր Անգլիացիներ այսօր կը վարանին ու եւ է գնում կատարել, որովհետեւ կը վախնան եւ կը մտածեն թէ «ով գիտէ ինչ կը պատահի Մարտին»: Այս է կառավարութեան կատարած քարոզութեան հետեւանքը:

Գերման մամուլը կը քննադատէ նաեւ վարչապետ Տալատիէն, Փարիզի ամերիկեան ակումբին մէջ խօսած ճառին համար:

## Խ. Միութիւնը մեծ նաւատորմիղ մը պիտի ունենայ

— oo —

«Փրաւտա»յի մէջ նաւային նոր գործավար Պ. Ֆրինովսքի գրած է յօդուած մը, որով կը յայտնէ թէ Խ. Միութիւնը շուտով պիտի ունենայ այնպիսի ուժեղ նաւատորմիղ մը, որ պիտի կրնայ յարձակիլ ու իր բոյնին մէջ խորտակել որ եւ է թշնամի տորմիղ:

«Խորհրդային նաւաշինարանները վերջին քանի մը տարիներուն շինած են բազմաթիւ մարտանաւեր, որոնք ոչ միայն աքանչելի կերպով զրահաւորուած են, այլ շատ մը տեսակէտներէ գերազանց են ցարական նաւատորմիղէն»:

Խորհրդային գործավարը կը յայտնէ նաեւ թէ երրորդ հնգամեայ ծրագրին վերջաւորութեան — 1942ին — Ռուսիա պիտի ունենայ ուժեղ, հզօր նաւատորմիղ եւ ծովային կատարեալ օդանաւորդութիւն:

Մոսկուայի զինուորական օրկանը, «Կարմիր Աստղ» կը գրէ.— «Հակախորհրդային խմբակը կը փառաբանէ իր ուժը, բայց խորհրդային մեծ ժողովուրդը եւ կարմիր բանակը վստահ են իրենց զօրութեան վրայ: Ֆաշական յարձակողական ուժերը կը պատրաստուին մեծ գրոհի մը, բայց Խ. Միութիւնը պատրաստ է դիմագրաւելու այդ գրոհը»:

»»» · «««

## ՋԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՈՒՆԳԱՐԻԱ փետրուար 24ին պաշտօնապէս սորվագրեց հակաբոլշեւիկեան դաշինքը, միեւնոյնատեն լուծելով ազգային – ընկերվարական (հիթլերական) կուսակցութիւնը, որուն գլխաւոր վարիչն է հայազգի Սալաշի, երեք տարի բանտարկութեան դատապարտուած: Այս առթիւ խիստ խուզարկութիւններ կատարուեցան եւ առաջին օրը ձերբակալուեցան 200 հոգի: Կառավարութիւնը այս տնօրինութեամբ կ'ուզէ ապացուցանել Հունգարիոյ անկախութիւնը՝ ներքին գործերու մէջ: Լուծման անմիջական պատճառն է փետրուար 3ի դէպքը, երբ երկու ռումբեր պայթեցան Փէշթայի սինակոկին առջեւ, վիրաւորելով 14 Հրեաներ: Հիթլերական կուսակցութիւնը առաջին անգամ լուծուեցաւ 1937ին, երբ անյաջող ձեռնարկ մը կատարեց Սալաշիի հրամանատարութեամբ: Յետոյ վերածուեցաւ քաղաքական կուսակցութեան եւ միշտ կը հետապնդուէր:

ԳԵՐՄԱՆԻՈՅ ԴԷՄ բուռն ցոյցեր կատարուեցան Վարշաւայի մէջ, նախաձեռնութեամբ ուսանողներու: Ամենամեծ հակագերման ցոյցն էր այս, 1936էն ի վեր: Ուսանողները գերմանական դեսպանատան առջեւ խռնուելով կ'աղաղակէին.— «Անկցի՛ Հիթլէր», «անկցի գերմանական գերակայութիւնը Եւրոպայի վրայ» եւն.: Ցոյցը տեւեց քանի մը ժամ, քաղաքին զանազան մասերուն մէջ միաժամանակ: Լեհաստանի արտաքին նախարարին դէմ ալ ցոյցեր կատարուեցան, իր գերմանասէր քաղաքականութեան համար, իսկ 500 ուսանողներ մարաջախտ Սմիկլի – Ռիցի բնակարանին առջեւ երթալով աղաղակեցին, — «Մարաջախտ, Տանցիկ առաջնորդէ մեզ»: — «Միայն պարզամիտները կրնան հաւատալ Գերմանիոյ բարեկամութեան»:— «Լեհաստանի երիտասարդութիւնը պատրաստ է համագեստ հագնելու եւ իր պարտականութիւնը կատարելու»: Սահմանամերձ քաղաքներու մէջ ալ ցոյցեր կատարուեցան եւ շատ մը Գերմանացիներու խանութները խորտակուեցան: Ցարաբերութիւնները լարուած են Տանցիկի Լեհերուն եւ Գերմաններուն միջեւ: Թերթերուն արգիլուեցաւ բան գրել այս ցոյցերու մասին:

ՖՐԱՆՍԱՅԻ ԲՆԱԿՉՈՒԹԵԱՆ նուազման խնդիրը ծանրակշիռ հանգամանք ստացած ըլլալով, մասնաւոր յանձնաժողով մը կազմուեցաւ վարչապետութեան մէջ: Գլխաւոր գործը պիտի ըլլայ քաջալերել ծնունդները, լեցնել գիւղերը՝ նօսրացնելով քաղաքներու բնակչութիւնը, զբաղիլ օտարականներու տեղաւորումով, զանոնք ֆրանսացի ժողովուրդին մէջ խառնելու համար եւն.:

ԹՈՒՐՔԻՈՅ արտաքին նախարարը, Շիւքրի Սարաճօղլու, Պելկրատ գնաց, Պալքանեան խորհրդաժողովէն վերջը: Այս առթիւ տեսակցութիւններ ունեցաւ Եուկոսլավիոյ խնամակալ իշխանին եւ նախարարներուն հետ: Պիտի հանդիպի նաեւ Աթէնք:

ՍՈՒՐԻՈՅ նոր վարչապետը, Լութֆի Հաֆար, դաշինքին անդամ եղած է 1925ին, յետոյ աքսորուած: Ներքին նախարարը, Մազհար փաշա, 1923-25ին եղած է վարչապետ Անդրյորդանանի, իսկ 1937ին՝ կառավարիչ Ալէվիներու երկրին: Դատական նախարարը, Նէսիմ Սաքրի, Պաղեստին փախած էր 1925ի ապստամբութենէն վերջը:

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ ՄԵՐԺԵՑ ներս առնել Սպանիոյ բոլշեւիկ փախստականները, ինչպէս մերժած էր Չեխերը: «Ուրեմն Ֆրանսայի վրա՞յ կ'իյնայ այս վտանգաւոր հիւրերը պատսպարելու հոգը», կը հարցնեն տեղական թերթերը:

ԱՒՍՏՐԻՈՅ մէջ բոլոր մեծ վանքերը եւ կրօնական հաստատութիւնները այսուհետեւ պիտի ենթարկուին պետական հսկողութեան:

ՆԻՒ ԵՈՐՔԻ համաշխարհային ցուցահանդէսի Ֆրանսական տաղաւարին շինութիւնը պիտի ուշանայ եւ դժուար պիտի ըլլայ աւարտել զայն մինչեւ բացման օրը, Ապրիլ 30, որովհետեւ ամերիկեան աշխատաւորական միութիւնը չուզեր որ տաղաւարին կառուցման համար գործի դրուին Ֆրանսացիներ:

ՄԱՐԱՋԱԽՏ ԿԷՕՐԻՆԿ Մարտ ամսու երկրորդ շաբթուն պիտի այցելէ Հռոմ եւ պիտի տեսակցի Մուսոլինիի ու կոմս Չիանոյի հետ: Յետոյ պիտի անցնի հարաւային Իտալիա, ուր պիտի տեսակցի մարաջախտ Պալպոյի հետ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւնը, Զայեան, Պարտիզպանեան, եւ Սթէֆըն ընտանիքները կը փութան իրենց շնորհակալութիւնները յայտնել Հ. Բ. Ը. Միութեան, եկեղեցւոյ հոգաբարձութեան, Փարիզի Հայ Տիկնանց Միութեան, Ֆ. Կապոյտ Խաչի եւ ամէն անոնց, որոնք անձամբ, ծաղկեպսակով եւ նամակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ Օր. ԹԱԳՈՒՀԻ ՊԱԼԹԱԶԱՐԵԱՆԻ մահուան առթիւ:



Հ. Ց. Դ. Սէնթ-Մարկրիթի (Մարսէյլ) «Համազասպ» խումբի կազմակերպած վիճակախաղէն շահած են հետեւեալ թիւերը.— 197՝ ազգային պարգեւախաղի մէկ տոմսերորդ տոմսակ: 143՝ մէկ շիշ օ տը քոլոն: 225՝ մէկ զոյգ գուլպայ: 132՝ մէկ շիշ շամփանեայ, 181՝ մէկ փողկապ: 174՝ այր մարդու շապիկ մը: 376՝ մէկ շիշ Շիրակ օղի: Ստանալու համար դիմել, Camp Ripert, St. Marguerite, ընկ. Ոսկան Մերուկեանին:



ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

18 տարեկան հայ աղջիկ մը (տաքթիլօ-Ֆաքթիւրիսթ) որ ունի նաեւ դրամեքենայ: Դիմել՝ Kebelianի, 4 Rue des Paquerettes, Alfortville, Seine:



## ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼԻ Զէնկիւլէրի Հայր. Միութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները 26 փետր. կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Հայ ակումբին մէջ: Օրակարգ՝ հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն:


Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN)

17, Rue Damesme — PARIS (13)

